Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 22 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32
ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 12—27։


## ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ XIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

*Ավելի քան ութ տարի է անցել Հայաստանի Կ(բ)Պ 13-րդ համագումարի հրավիրման ժամանակվանից։ Այդ ժամանակաշրջանը բնութագրվում է Հայաստանի արդյունաբերության, գյուղատնտեսության, ժողովրդական կրթության, գիտության, կուլտուրայի և արվեստի հետագա վերելքով։*

*Հայաստանի բոլշևիկների կոմունիստական պարտիան, սերտորեն համախմբված Համ Կ(բ)Պ Կենտկոմի և իր իմաստուն առաջնորդ մեծ Ստալինի շուրջը, հաշվետու ժամանակաշրջանի բոլոր էտապներում հաջողությամբ աշխատում էր մեր երկրի առաջ դրված կարևորագույն խնդիրների լուծման վրա։*

*Հայաստանի կոմպարտիան, նախապատերազմյան տարիների միջազգային լարված իրադրության մեջ, ռեսպուբլիկայի աշխատավորներին պայքարի էր տանում այն խնդիրների իրագործման համար, որոնք*

ընկեր Ստալինը ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում առաջադրել էր սովետական ժողովրդին՝ ժողովրդական տնտեսության վերելքի, կուլտուրայի աճման և մեր պետության ռազմա-տնտեսական հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու ասպարեզում։

Հայրենական Մեծ պատերազմի անհեղ օրերին Հայաստանի կոմունիստական պարտիան ընկեր Ստալինի կոչով Հայաստանի աշխատավորներին պայքարի մոբիլիզացրեց գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ՝ հանուն մեր հայրենիքի պատվի, ազատության ու անկախության։

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո, Հայաստանի պարտիական կազմակերպությունները գլխավորեցին ռեսպուբլիկայի բանվորների, կոլխոզնիկների և ինտելիգենցիայի ակտիվությունը՝ հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու, մեր երկրի ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելքի համար։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ռեսպուբլիկայի աշխատավորները Հայաստանի կոմպարտիայի 13-րդ համագումարից ի վեր մեծ հաջողություններ են ձեռք բերել սոցիալիստական շինարա-



րության բոլոր ճյուղերում։ Զգալիորեն աճել է Հայաստանի արդյունաբերությունը, որը հարստացել է մի շարք նոր ճյուղերով՝ մետալուրգիական, մեքենաշինական, քիմիական և այլն։

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել արտադրության կազմակերպման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և թողարկվող արտադրանքի որակի բարելավման ասպարեզում։ Հաջողությամբ կատարելով հետպատերազմյան հնգամյակի առաջին երկու տարիների պլանը, ռեսպուբլիկայի արդյունաբերությունը դեռ 1947 թվին երկրին 36,8 տոկոսով ավելի շատ արտադրանք տըվեց, քան նախապատերազմյան 1940 թվին, իսկ 1948 թվի տասը ամիսների ընթացքում 21,7 տոկոսով ավելի շատ, քան 1947 թվի նույն ժամանակամիջոցում։

Անշեղորեն իրագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումները և մեծ Ստալինի իմաստուն ցուցումները, Հայաստանի բոլշևիկները մեր ռեսպուբլիկան դարձրել են կոլխոզային առաջավոր հողագործության երկիր։ Զգալի չափով բարձրացել է հասարակական և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը, ընդարձակվել են տեխնիկական կուլտուրաների, խաղողի և պտղատու այգիների

տարածությունները, ավելացել է անասունների գլխաքանակը և բարձրացել է նրանց մթերատվությունը։ Հաջողությամբ ծավալվում են գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման աշխատանքները և արմատավորվում են միչուրինյան բիոլոգիայի առաջավոր մեթոդները։ Ռեսպուբլիկայում մեծ աշխատանք է կատարվել իռրիգացիայի ասպարեզում, որի հետևանքով զգալի չափով ընդարձակվել է ոռոգելի հողերի տարածությունը։

Հաշվետու ժամանակաշրջանում մեծ հաջողություններ են ձեռք բերվել նաև կուլտուրայի, գիտության, գրականության և արվեստի ասպարեզում։ Ավելացել է բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների թիվը։ Անցած ութ տարիներում ռեսպուբլիկայի բուհերը երկրին տվել են 6.610 մասնագետ։ Հինգ տարի առաջ ստեղծված ռեսպուբլիկայի գիտական ամբողջ մտքի խոշորագույն կենտրոնը՝ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիան ներկայումս միավորում է 30 գիտա-հետազոտական ինստիտուտներ։

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի պարտիական կազմակերպությունն աճել է 1,8 անգամ։ Պարտիայի շարքերի ա-



ճումը պարտիական կազմակերպություններից պահանջեց բարձրացնել կադրերի մարքսիստական-լենինյան կրթության մակարդակը։

Հանրագումարի բերելով հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշխատանքի արդյունքները, Հայաստանի կոմունիստական բոլշևիկների պարտիայի 14-րդ համագումարը դրա հետ միասին նշեց ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, գիտության, արվեստի ու կուլտուրայի հետագա վերելքի ուղիները։ Համագումարն իր որոշումներում ընդգծեց, որ Հայաստանի պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ մոբիլիզացնել բոլոր աշխատավորների ջանքերը հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար, էլ ավելի զարգացնել արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը և բարձրացնել աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը։

14-րդ համագումարը իր որոշումներում նշեց հնգամյակի խոշորագույն նորակառույցների շինարարությունը և գործարկումն ուժեղացնելու, արդյունաբերության առաջատար ճյուղերը բազմակողմանիորեն զար-

դացնելու, մի շարք կարևորագույն ձեռնարկությունների շինարարությունը և վերակառուցումն արագացնելու անհրաժեշտությունը։

Արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարները պետք է ամեն կերպ բարձրացնեն արտադրության տեխնիկական կուլտուրան, կիրառեն նորագույն սարքավորում, ապահովեն արտադրության հետագա մեքենայացումը, կատարելագործեն տեխնիկական պրոցեսները, ձգտելով խնայել հումքը, էլեկտրաէներգիան, վառելանյութը, օժանդակ նյութերը և դրամական միջոցները, ամեն կերպ իջեցնելով արտադրանքի ինքնարժեքը և բարձրացնելով նրա որակը։

Հայաստանի կոմպարտիայի 14-րդ համագումարը նշեց, որ գյուղատնտեսության ասպարեզում առաջիկա տարիների համար ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գլխավոր խնդիրն է՝ կրկնապատկել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և բարձրացնել անասունների մթերատվությունը։ Համագումարը պարտիական կազմակերպությունների առաջ խնդիր դրեց՝ լրիվին իրագործել հողագործության



խոտադաշտային ցանքաշրջանառությունը՝ կիրառելով ագրոտեխնիկական մի ամբողջ շարք կարևորագույն միջոցառումներ, է՛լ ավելի բարելավել սերմնաբուծական տնտեսությունը, տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակել ի հաշիվ նոր ոռոգվող և չորացվող հողերի։

Համագումարը պարտիական կազմակերպություններին առաջարկեց խիստ բարձրացնել գյուղատնտեսության մեքենայացման մակարդակը և իրագործել 1950 թվին կոլխոզները, սովխոզները ու ՄՏ կայանները լրիվին էլեկտրիֆիկացնելու և գյուղատնտեսական արտադրության կարևորագույն պրոցեսները էլեկտրիֆիկացնելու պլանը։

14-րդ համագումարն ընդգծեց, որ գիտության ասպարեզում պարտիական կազմակերպությունների հիմնական խնդիրն է՝ է՛լ ավելի բարելավել գիտա-հետազոտական հիմնարկությունների աշխատանքը և ստեղծել բարձր գաղափարական գիտական աշխատություններ, որոնք կապված լինեն սոցիալիստական շինարարության պրակտիկայի հետ և նպաստեն սովետական գիտության զարգացմանը։

Համագումարը նշեց, որ պարտիական կազմակերպությունների գլխավոր խնդիրնե-

րից մեկն է՝ անշեղորեն իրագործել ընդհանուր պարտադիր 7-ամյա ուսուցումը գյուղում և լրիվ միջնակարգ կրթությունը՝ քաղաքում, ինչպես նաև բազմակողմանիորեն բարձրացնել սովորողների ուսուցման և կոմունիստական դաստիարակության որակը։

Համագումարը գրականության ու արվեստի զարգացման ասպարեզում պարտիական կազմակերպությունների առաջ խնդիր դրեց անշեղորեն իրագործել գրականության ու արվեստի հարցերի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումները, ստեղծել բարձր գեղարվեստական և գաղափարապես հագեցված գործեր՝ գրականության, դրամատուրգիայի, երաժշտության ասպարեզում, ինչպես նաև դոկումենտալ և գեղարվեստական կինոնկարներ։

Համագումարը իր որոշումներում մեծ ուշադրություն նվիրեց նաև կուլտուր-լուսավորական աշխատանքին, բնակչության նյութական և կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու լայն միջոցառումների անցկացմանը, ռեսպուբլիկայի քաղաքների, շրջանային կենտրոնների և գյուղերի հետագա բարեկարգմանը։

Հայաստանի կոմպարտիայի 14-րդ համագումարի որոշումները հետպատերազմյան



ստալինյան հնգամյակի հոյակապ խնդիրների իրագործմանը նպաստող միջոցառումների մարտական ծրագիր են։

Ագիտատորների խնդիրն է՝ աշխատավորների լայն մասսաներին հասցնել Հայաստանի կոմպարտիայի 14-րդ համագումարի որոշումները։ Խորապես պարզաբանելով համագումարի որոշումները, ագիտատորները դրա հետ միասին պետք է կոնկրետ օրինակներով ցույց տան, թե ինչպես են իրագործվում այդ որոշումները։ Հայաստանի կոմպարտիայի 14-րդ համագումարի որոշումների պրոպագանդան ագիտատորները պետք է անցկացնեն, այն սերտորեն զուգակցելով իրենց ձեռնարկության, կոլխոզի, հիմնարկության խնդիրների հետ և սոցիալիստական մրցության լայն ծավալման հիման վրա ռեսպուբլիկայի աշխատավորներին մոբիլիզացնեն կենսագործելու Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի 14-րդ համագումարի որոշումները, ընկեր Ստալինի կողմից սովետական ժողովրդի առաջ դրված մարտական խնդիրները։

### ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 28 ՏԱՐԻՆ

> Միայն Սովետական իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն:
>
> Ի. ՍՏԱԼԻՆ

*Սովետական Հայաստանի աշխատավորները Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու 28-րդ տարեդարձը դիմավորում են հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ, վճռական տարվա պլանների կատարման ու գերակատարման փայլուն հաղթանակներով։ Ծավալվում և ամրապնդվում է սոցիալիստական մրցությունը բանվորների, կոլխոզային գյուղացիության, ինտելիգենցիայի շարքերում. Նրանք ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանի-*



*քում յուրաքանչյուր օր բազմապատկում են իրենց հաջողությունները՝ մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։ Սովետական Հայաստանի աշխատավորների ստեղծագործական ուժն ու եռանդը ամբողջապես ուղղված են իրագործելու արդյունաբերության ու գյուղատնտեսության աննախընթաց թափ ու նշանակություն ունեցող վերելքի հոյակապ պլանները։ Սովետական Միության տնտեսական հզորացման հետ միասին է՛լ ավելի ուժեղանում է մեր ռեսպուբլիկան, տեղի է ունենում մեր ժողովրդի նյութական բարեկեցության անշեղ վերելք։*

*Սովետական Հայաստանի 28-րդ տարեդարձի նախօրյակին տեղի ունեցավ Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարը, որը քաղաքական մեծագույն իրադարձություն է հայ ժողովրդի կյանքում։ Համագումարը ամփոփեց Հայաստանի պարտիական կազմակերպությունների կատարած վիթխարի աշխատանքը հաշվետու ժամանակաշրջանում, որն ընդգրկում է ստալինյան երրորդ հնգամյակի համար մղվող պայքարի, Հայրենական Մեծ պատերազմի և հետպատերազմյան շրջանում երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանի երեք տարիները։ Անցած ավելի քան ութ*

տարիների ընթացքում Հայաստանի աշխատավորները փայլուն հաջողություններ են ձեռք բերել ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի ու գիտության զարգացման բնագավառում։ Հայրենական Մեծ պատերազմի դաժան օրերին Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ միասին, հայ ժողովուրդը ռազմաճակատում և թիկունքում հերոսաբար պաշտպանեց Մեծ Հոկտեմբերի նվաճումները, սոցիալիստական Հայրենիքի ազատությունն ու անկախությունը։ Պատերազմի հաղթական ավարտումից հետո, մեր ժողովուրդը ձեռնամուխ եղավ վերականգնելու ժողովրդական տնտեսության զարգացման նախապատերազմյան մակարդակը, մոտակա ժամանակներում գերազանցելու այդ մակարդակը և է՛լ ավելի ամրացնելու սովետական պետության ռազմա-տնտեսական հզորությունը։

Վեհ ու հոյակապ են Սովետական Հայաստանի նվաճումները անցած 28 տարիներին։ Տապալելով դաշնակների արյունոտ տիրապետությունը, Հայաստանի բանվորներն ու գյուղացիները բոլշևիկների պարտիայի, անձամբ հայ ժողովրդի մեծ բարեկամ ընկեր Ստալինի ղեկավարությամբ և ռուս մեծ ժո-



ղովրդի օգնությամբ շտեսնված ծաղկման ու բարգավաճման հասցրին Սովետական Հայաստանը։ «Սովետական Միության հզորությունը և լենինյան-ստալինյան իմաստուն ազգային քաղաքականությունը ծաղկման հասցրին Սովետական Հայաստանը, նրա տնտեսությունը և կուլտուրան» (ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարում ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցումից)։

Ռեսպուբլիկայի աշխատավորները Մեծ Հոկտեմբերի ծնունդ՝ Սովետական Հայաստանի 28-րդ տարեդարձը տոնում են այնպիսի պայմաններում, երբ «գնալով ավելի է ամրապնդվում ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, որոնք թևավորված են սովետական հայրենասիրությամբ, տոգորված են անսահման վստահությամբ և սիրով դեպի մեր երկրի Ստալինյան ղեկավարությունը» (Մոլոտով)։

Սովետական ժողովրդի վերջին շրջանի հաջողությունները ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման գործում, ցայտուն կերպով ցույց են տալիս Սովետական Սոցիալիստական սիստեմի վիթխարի կենսական ուժն ու առավելությունը կապիտալիստական սիստեմի նկատմամբ։

Սովետական Հայաստանի 28-րդ տարե-

*դարձը տոնում ենք այնպիսի պայմաններում, երբ «գնալով ավելի է աճում ՍՍՌՄ միջազգային հեղինակությունը, որպես դեմոկրատական և հակաիմպերիալիստական լագերի գլխավոր պատվար՝ հակադիր իմպերիալիզմի և ագրեսիայի լագերին» (Մոլոտով)։*

*Մեր Սովետական Հայրենիքը հանդիսանում է խաղաղության ու դեմոկրատիայի ամուր և հուսալի հենարանը ամբողջ աշխարհում։ Նա գնում է ավանգարդում բոլոր դեմոկրատական ուժերի, որոնք պայքարում են նոր պատերազմի հրձիգների դեմ։*

***

*Անցած 28 տարիների ընթացքում աննախընթաց վերելք է ապրել, բուռն թափով զարգացել է ռեսպուբլիկայի արդյունաբերությունը։ Երբեմնի ցարական ինքնակալության կիսագաղութը, հետամնաց գյուղատնտեսական երկիրը դարձել է առաջավոր ինդուստրիալ-ագրարային երկիր։*

*Նախասովետական Հայաստանում միայն գոյություն ուներ արդյունաբերության երկու ճյուղ՝ պղնձի, որը գտնվում էր ֆրանսիական կապիտալի ձեռքում, և գինու-կոնյակի արդյունաբերությունը։ Երկրում չկային խոշոր մեքենայացված արդյունաբերա-*



*կան ձեռնարկություններ, գոյություն ունեցող կաշվի, օճառի և մի քանի այլ ձեռնարկությունների ունեին տնայնագործական բնույթ։ Չնչին էր ժողովրդական տնտեսության ընդհանուր ծավալի մեջ արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը, այն 1913 թվին կազմում էր երկրի ընդհանուր արտադրանքի 23,9 տոկոսը, իսկ դաշնակների օրոք այն հասավ գրեթե զերոյի։*

*Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո ավերակների ու մոխրակույտերի միջից արագ կերպով սկսեցին դեպի երկինք բարձրանալ հարյուրավոր հսկա գործարանների ու ֆաբրիկաների ծխնելույզներ, կառուցվեցին բազմաթիվ հիդրոկայաններ, նոր երկաթուղագծեր ու խճուղիներ։ Այդ զարգացումն իր բուռն վերելքն ապրեց ստալինյան հնգամյակների տարիներին, ստեղծվեց ծանր արդյունաբերություն։ Ժամանակակից տեխնիկական բազայի վրա ստեղծվեցին արդյունաբերական բոլորովին նոր ճյուղեր, այն է՝ մետալուրգիական, մեքենաշինական, քիմիական, էլեկտրական, շինանյութերի, տեքստիլ, սննդի, թեթև արդյունաբերություն։*

*Արդյունաբերության արտադրանքը Սովետական Հայաստանում 1947 թվին՝ 1913 թվի*

համեմատությամբ աճեց 28,3 անգամ։ Զարգացման այդ աննախընթաց թափը հասցրեց այն բանին, որ այժմ արդյունաբերության արտադրանքը ռեսպուբլիկայի ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ կազմում է մոտ 80 տոկոս։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը նոր, հզոր վերելք է ապրում հետպատերազմյան ստալինյան հնգամյակում։ 1950 թվին մեր արդյունաբերական արտադրանքը 1940 թվի համեմատությամբ աճելու է 2,3 անգամ։ Հայաստանի աշխատավորությունը վիթխարի նվաճումներ է ձեռք բերել ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար մղվող համաժողովրդական պայքարում։

Ստալինյան հնգամյակի առաջին երկու տարիների ընթացքում, 1946 և 1947 թվականներին ռեսպուբլիկայի արդյունաբերությունն իր պլանը կատարեց 102 տոկոսով։ Գերազանցված է արդյունաբերության համախառն արտադրանքի նախապատերազմյան մակարդակը։ 1947 թվին՝ 1940 թվականի համեմատությամբ համախառն արտադրանքի աճը կազմեց 136,8 տոկոս։ 1948 թվականի տասն ամսվա պլանը կատարված է 105,2



տոկոսով, նախորդ՝ 1947 թվականի համապատասխան ժամանակաշրջանից գերազանցելով 21,7 տոկոսով։ Արդեն 1947 թվին՝ 1940 թվի համեմատությամբ 25,1 տոկոսով գերազանցվեց աշխատանքի արտադրողականությունը։

Սովետական Հայաստանում մեծ չափերով զարգանում է էներգետիկ տնտեսությունը։ Կենսագործելով Վ. Ի. Լենինի պատմական ցուցումները, անցած 28 տարիների ընթացքում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, առանձնապես արդյունաբերության համար ստեղծվել է հզոր էներգետիկ բազա։

Նախասովետական Հայաստանում էլեկտրաարդյունաբերությունը ժողովրդական տնտեսության ամենահետամնաց ճյուղն էր։ Երկրում կար ընդամենը 7—10 փոքր էլեկտրակայան՝ 3.100 կիլովատ կարողությամբ, որոնցից 5-ը գտնվում էր պղնձարդյունաբերության մեջ, մյուսները արդյունաբերական նշանակություն չունեին և գերազանցապես օգտագործվում էին կոմունալ կարիքների համար։

Դաշնակների տխրահռչակ տիրապետության տարիներին էլեկտրաէներգիայի այդ ողորմելի քանակը կիսով չափ կրճատվեց։

Սովետական իշխանության տարիներին

Հայաստանում կառուցվել են խոշոր հիդրոկայաններ՝ 1-ին և 2-րդ Երզնկներր, Լենգէսը, Ձորագէսը, Քանաքեռգէսը, տասնյակ հիդրոէլեկտրակայաններ քաղաքներում ու գյուղերում։ Հաջողությամբ կենսագործվում է Սեվան—Զանգու կասկադի պրոբլեմը։ Սևանա լճից հոսող Զանգու գետի ամբողջ երկարությամբ կառուցվելու է էլեկտրակայանների մի ամբողջ շարք, որոնց կարողությունը համարյա հավասար է լինելու Դնեպրոգէսին։ Սևանա լճի ջրով ոռոգվելու են սոցիալիստական դաշտերի տասնյակ հազարավոր հեկտար հողեր։

Կառուցված է այդ կասկադի առաջնեկը՝ Քանաքեռգէսը։ Օրերս շահագործման հանձնվեց Միության բարդ հիդրոտեխնիկական կառույցներից մեկը՝ Սևանի ջրընդունիչ կառուցվածքը, որն ապահովում է Քանաքեռգէսի էֆեկտիվ աշխատանքը լրիվ կարողությամբ։ 1949 թվականի առաջին կիսամյակում շահագործման կհանձնվի Լճային հիդրոէլեկտրակայանը, որը Հայէներգոյի հիդրոկայանների կարողությունը կավելացնի մոտ 30 տոկոսով։ Սկսված է և շինարարության պրոցեսումն է գտնվում Սևանի կասկադի երրորդ— ամենահզոր կայանի՝ Գյումուշգէսի շինարարությունը, որը շահագործման



հանձնելով պետական էլեկտրակայանների կարողությունը կաճի համարյա երեք անգամ։

Գյումուշգէսի շինարարության ավարտումով և այն շահագործման հանձնելով հզոր էներգետիկ բազա է ստեղծվում Հայաստանի հետագա արդյունաբերական զարգացման համար։

Արագորեն զարգացող քիմիական արդյունաբերությունը և գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները չիովին կապահովվեն էլեկտրական էներգիայով, որը հնարավորություն կտա ժամանակին շահագործման հանձնելու արդյունաբերության այդ ճյուղերի գծով կառուցվող խոշոր ձեռնարկությունները, այն է՝ Երևանի Ալյումինի գործարանը, Քաջարանի առաջին հերթի շինարարությունը, Կիրովականի Քիմիական կոմբինատը, Երևանի Պոլիվինիլացետատի գործարանը, շինարարության 55 միլիոն ռուբլու նախահաշվային արժողությամբ, ինչպես նաև արդյունաբերության մյուս ճյուղերի խոշոր շինարարությունները, այն է՝ Էլեկտրալամպերի գործարանը, շինարարության 55 միլիոն ռուբլու նախահաշվային կարողությամբ, Ռադիոգործարանը, 45 միլիոն ռուբլի արժողությամբ, Հեծանվային գործարանը, 35 միլիոն ռուբլի արժողությամբ, Կամվոլային

կոմբինատը, 45 միլիոն ռուբլի արժողությամբ, Կիրովի անվան գործարանի ընդարձակումը և ՍՍՌ Միության էլեկտրաարդյունաբերության մինիստրության գործարանների շահագործումը լրիվ կարողությամբ։

Սովետական Հայաստանում էժան հիդրոէներգիայի բազայի վրա ծնունդ առավ քիմիական և ռետինի արդյունաբերությունը։ Երևանի Կիրովի անվան, Ավտոդողերի, Կաբելի, Կարբիդի, Կիրովականի Ցիանամիդի և Կարբիդի, Ալավերդու Ծծմբաթթվի, Դդմաշենի, Սուպերֆոսֆատի և այլ գործարանները ռեսպուբլիկայի պարծանքն են։

Ռեսպուբլիկայի մետալուրգիական արդյունաբերությունը լայն զարգացում է ստացել, ստեղծվել են մի շարք նոր ձեռնարկություններ։

**Մեքենաշինությունը** Հայաստանում բոլորովին նոր ճյուղ է։ Մինչև սովետականացումը մետաղամշակման միակ ձեռնարկությունը Հայաստանում Երևանի փոքրիկ և խղճուկ մեխանիկական արհեստանոցն էր, որտեղ աշխատում էին 40 մարդ։ Սոցիալիստական արդյունաբերության հետագա զարգացումը հրամայական պահանջ դրեց Հայաստանի աշխատավորության առաջ— ստեղծել ու արագ թափով զարգացնել մեքենաշինության



ու մետաղամշակումը։ Սովետական իշխանության տարիներին, հատկապես վերջին տասներկու տարում, ռեսպուբլիկայի աշխատավորները բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ այս բնագավառում ձեռք բերեցին վիթխարի նվաճումներ։

«Հաշվետու ժամանակաշրջանում,— ասում է ընկ. Գր. Հարությունյանը ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարին տված իր զեկուցման մեջ,— արդյունաբերության զարգացման մեջ հատուկ տեղ գրավեց մեքենաշինությունը, որը 1947 թվականին արտադրանքի թողարկումը՝ 1940 թվականի համեմատությամբ՝ ավելացրեց երեք անգամ»։

1948 թվականի ինն ամսվա ընթացքում մեքենաշինական արդյունաբերության ձեռնարկությունները պլանը կատարեցին 105 տոկոսով։ Երևանի Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանն այս տարի դազգահների արտադրության ասպարեզում հասել է 1950 թվականի մակարդակին։ Երևանի Կաբելի գործարանը 1948 թ. ինն ամսվա պլանը կատարեց 121 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ տվեց արտադրանքի աճ երեք անգամ։ Վերջին տարիներում կառուցվել են մեքենաշինական այնպիսի խոշոր

գործարաններ, ինչպես Երևանի «Ավտոդետալը», Գյուղատնտեսական գործիքների գործարանը։ Երևանում վերջին մի քանի տարում գործարկման մեջ դրվեցին Փոքր հիդրոտուրբինների, Էլեկտրամեքենաշինական, Կոմպրեսորների, Ավտովերանորոգման, Կաբելի, Ժամացույցի գործարանները և այլն։ Մեքենաշինությունը և մետաղամշակումը այժմ Սովետական Հայաստանում դարձել են ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերից մեկը։

Սովետական շրջանում, մասնավորապես վերջին տարիներին լայն ծավալ են ստացել արդյունաբերական, տրանսպորտային, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների կառուցումները, քաղաքների ու գյուղերի բարեկարգումը, բնակարանային շինարարությունը։ Լայնածավալ այդ շինարարությունը առաջ մղելու, և միութենական մյուս ռեսպուբլիկաներին ևս օժանդակելու համար, ռեսպուբլիկայում մեծ թափով ծավալվել է շինանյութերի արդյունաբերությունը։ Սովետական իշխանության տարիներին կառուցվել են Արարատի Ցեմենտի, Ջրօսուրի Կրի գործարանները ծավալվում է Արթիկ-Տուֆի, Անի-Պեմզայի, գրանիտի, մարմարի, բազալտի լայն արտադրությունը, գործում են Կի-



րովականի, Երևանի և մյուս շրջանների աղյուսի գործարանները, կառուցվում է Թումանյանի Հրակայուն աղյուսի խոշոր գործարանը։ Ստեղծվել են Ապակու, Մոլիտի, Հախճապակու և Փայտամշակման մի շարք գործարաններ։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բազմապիսի հումքը բարենպաստ պայմաններ է ստեղծել սննդի արդյունաբերության զարգացման համար։ Սովետական Հայաստանի սննդարդյունաբերության համախառն արտադրանքը 1947 թվին կազմեց 156,6 միլիոն ռուբլի։ Սննդարդյունաբերության մեջ առանձնապես մեծ տեղ են գրավում գինու-կոնյակի, կոնսերվի, ծխախոտի, ալրաղացի, հրուշակեղենի, մսի, կաթի, յուղի, պանրի, ձեթ-օճառի, շաքարի արդյունաբերությունը։ Ստալինյան նոր հնգամյակում կառուցվում են և կկառուցվեն ու շահագործման կհանձնվեն մի շարք նոր, խոշոր գործարաններ սննդարդյունաբերության գծով, որոնք նոր ու էլ ավելի բարձր աստիճանի կհասցնեն արդյունաբերության այդ ճյուղը ռեսպուբլիկայում։

Ռեսպուբլիկայի բամբակը, բոժոժը, բուրդը, կաշին վերամշակվում են թեթև արդյունաբերության բազմաթիվ գործարաններում

(Բամբակզտիչ, Տեքստիլ, Մետաքսի, Կաշվի, Կոշիկի և այլն)։ Ռեսպուբլիկայի պարծանքն է կազմում Լենինականի Տեքստիլ կոմբինատը, Տրիկոտաժի, Գործվածքային և Մանվածքային գործարանները։ Հայրենական պատերազմի տարիներին Երևանում հիմնադրվեց Մահուդի խոշոր գործարանը, որն արդեն տալիս է բարձրորակ մահուդեղեն։

Սովետական իշխանության տարիներին, առանձնապես վերջին շրջանում բուռն կերպով աճեց տեղական արդյունաբերությունը, արդյունաբերական կոոպերացիայի ձեռնարկությունների ցանցը, որն այժմ իր պատվավոր տեղն է գրավում ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ։ 1948 թվին սկսվել են Սանահին—Լենինական կայարանների միջև ընկած ուղեմասի էլեկտրիֆիկացման աշխատանքները, որը կմեծացնի երկաթուղու թողարկունակությունը։

Արդյունաբերության ընդհանուր զարգացման հետ միասին զգալիորեն աճեց ռեսպուբլիկայի բանվորների թիվը և ստեղծվեց որակյալ ինդուստրիալ բանվորների խոշոր բանակ։ Ստեղծվել է նաև ազգային սեփական տեխնիկական ինտելիգենցիա, որոնք ղեկավարում են սոցիալիստական արդյունաբերության բազմապիսի ճյուղերը։



1940 թվականի համեմատությամբ բարձրագույն և միջնակարգ տեխնիկական կրթություն ունեցող ինժեներա-տեխնիկական կադրերի քանակը 1948 թվականին աճել է 43,2 տոկոսով։ Ռեսպուբլիկայի բուհերը և տեխնիկումները հիմնականում ապահովում են աճող արդյունաբերության պահանջը կադրերի ասպարեզում։ Հայաստանի տեխնիկական բուհերը և տեխնիկումները վերջին 8 տարում տվել են զանազան մասնագիտության 950 ինժեներ և 1612 տեխնիկ։

Վերջին ութը տարվա ընթացքում աշխատանքային ռեզերվների սիստեմը պատրաստել է զանազան մասնագիտության 16.500 երիտասարդ բանվորներ։ Ներկայումըս ռեսպուբլիկայի 11 արհեստագործական ուսումնարաններում և ֆաբգործուսի 5 դպրոցներում սովորում են մոտ 3.000 մարդ։

Արդյունաբերության մեջ զգալիորեն աճել է նաև աշխատանքի արտադրողականությունը։ Մեկ բանվորի միջին արտադրողականությունը 1913 թվի համեմատությամբ 1947 թվին աճել է 4,4 անգամ։

Տարեց- տարի աճում է բանվորների և ծառայողների աշխատավարձի ֆոնդը՝ 1948 թվին 1940 թ. նկատմամբ կազմում է 205,9 տոկոս։ Այդ ժամանակամիջոցում բանվորնե-

րի և ծառայողների թիվը աճել է 126,1 տոկո-
սով։ Ռեսպուբլիկայի բանվոր-ծառայողների
ամսական միջին աշխատավարձը 1948 թը-
վին—1940 թվի նկատմամբ կազմում է 163,0
տոկոս։

Ռեսպուբլիկայի գործարաններում, ֆաբ-
րիկաններում, տրանսպորտում և շինարա-
րության մեջ ամենուրեք լայն ծավալ է ստա-
ցել սոցիալիստական մրցությունը։ Մոսկ-
վայի ձեռնարկությունների օրինակով Սո-
վետական Հայաստանի առաջավոր ձեռ-
նարկությունների կոլեկտիվները լրացուցիչ
պարտավորություններ են ստանձնել հումքի,
վառելանյութի և էլեկտրաէներգիայի խնայո-
ղության, արտադրական պլանները ժամկե-
տից շուտ և որակական բարձր ցուցանիշ-
ներով կատարելու համար։ Կիրովի անվան,
Կիրովականի Քիմիական գործարանի, Լենի-
նականի Տեքստիլ կոմբինատի, Երևանի Կա-
բելի, Ձերժինսկու անվան դազգահաշինա-
կան, Շինանյութերի գործարանի, Սևանշինի
կոլեկտիվներն իրենց հայրենասիրական
նախաձեռնություններով օրինակ են ծառա-
յում ռեսպուբլիկայի մյուս ձեռնարկություն-
ների համար։ Ռեսպուբլիկայի արդյունաբե-
րության աշխատողները ընկեր Ստալինին
ուղղված նամակում պարտավորվել են մին-



չև 1948 թվականի վերջը տալ ավելի քան 60
միլիոն ռուբլու գերպլանային սոցիալիստա-
կան կուտակում։

Պատվով են կատարում սոցիալիստական
մրցությամբ վերցրած իրենց պարտավորու-
թյունները ռեսպուբլիկայի արդյունաբերա-
կան ձեռնարկությունները։ Հոկտեմբերյան
Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 31-րդ
տարեդարձի նախօրյակին՝ Լենինական քա-
ղաքի արդյունաբերական ձեռնարկություն-
ները, Երևանի ավելի քան 35 ձեռնարկու-
թյուն, Շինանյութերի մինիստրության ձեռ-
նարկությունները կատարեցին համախառն
արտադրանքի իրենց տարեկան պլանները։

Սովետական Հայաստանի արդյունաբե-
րության հետագա զարգացման համար, մեր
խնդիրն է մոբիլիզացնել աշխատավորության
ուժերը ամենաարագ կերպով շահագործման
հանձնելու արդյունաբերական նոր ձեռնար-
կությունները, կատարելագործելու արտադ-
րական պրոցեսների տեխնոլոգիան, արմա-
տավորելու արտադրության կազմակերպ-
ման առաջավոր մեթոդներ և ապահովելու
աշխատանքի արտադրողականության անշեղ
աճը։ Պետք է օրավուր ծավալել սոցիալիս-
տական մրցությունը՝ ստանձնած պարտա-
վորությունների կատարման համար, բարե-

լավել արտադրանքի որակը, իջեցնել ինքնարժեքը, ապահովել դերպլանային կոցիալիստական կուտակումը արդյունաբերության մեջ։

***

Հայաստանում Սովետական կարգերի գոյության 28 տարիներում գյուղատնտեսությունը հասավ աննախընթաց բարձրության։ Շնորհիվ սովետական իշխանության, բոլշևիկների պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի հայրական հոգատարության, Հայաստանում ստեղծվեց նոր— սոցիալիստական գյուղատնտեսություն—հիմնված ժամանակակից տեխնիկայի բազայի վրա. մեծ չափերով ընդարձակվեցին ցանքատարածությունները, բարձրացավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, մեծապես աճեց հանրային անասնապահությունը և բարձրացավ կոլխոզային գյուղացիության նյութական-կուլտուրական կյանքի բարեկեցությունը։

Նախասովետական Հայաստանում գյուղատնտեսությունը չափազանց հետամնաց էր ու ցածր մակարդակի վրա էր գտնվում։

Առաջին համաշխարհային պատերազմի և հայ ժողովրդի ոխերիմ թշնամի դաշնակների տիրապետության շրջանում Հայաստանի



գյուղատնտեսությունը շտեսնված անկում ապրեց։ Ցանքերի ընդհանուր տարածությունը 1913 թվի համեմատությամբ կրճատվեց 4 անգամ, բերքատվությունն իջավ աներևակայելի աստիճանի, անասունների գլխաքանակը խիստ պակասեց։ Խաղողի ու պտղատու այգիները բոլորովին անխնամ մնացին, որի հետևանքով նրանց մեծ մասը ոչնչացան։

Առաջնորդվելով Լենինի և Ստալինի ցուցումներով, Հայաստանի աշխատավորները ձեռնամուխ եղան ոռոգելի հողերի տարածությունների ընդարձակման, գյուղատնտեսության մեքենայացման, գյուղատնտեսության մեջ ագրոտեխնիկան արմատավորելու, գյուղի էլեկտրիֆիկացման ու բարձրորակ գյուղատնտեսական մասնագետների կադրեր պատրաստելու մեծ գործին։

Սովետական իշխանության տարիներին իրրիգացիոն շինարարության մեջ ներդրվեց 283 միլիոն ռուբլի, կոլխոզային գյուղացիության օգնությամբ կառուցվել են բազմաթիվ մեծ ու փոքր ջրանցքներ։ Եթե 1913 թվին Հայաստանի ոռոգվող հողերի տարածությունը 97.000 հեկտար էր, որը դաշնակների օրոք կրճատվելով, հասավ 60 հազար հեկ-

տարի, ապա այժմ այն հասնում է 211 հազար հեկտարի։

Եթե նախասովետական Հայաստանի գյուղում համարյա մեքենաներ չկային, ապա այժմ կան բազմաթիվ տրակտորներ, 219 կոմբայն, 250 կալսիչ, 320 շարքացան, 270 կուլտիվատոր, 1040 գութան և այլն։

Գյուղատնտեսական կուլտուրաների ցանքերի տարածությունը 1948 թվին 1919 թվի համեմատությամբ աճել է 5,6 անգամ, այդ թվում հացահատիկինը ավելի քան 4,2 անգամ, բամբակինը՝ 25 անգամ, ծխախոտինը՝ 161 անգամ, բանջարանոցային կուլտուրաներն ու կարտոֆիլը ավելի քան 13 անգամ, խաղողինը — 1946 թվի վիճակագրական տվյալներով — 3,2 անգամ, պտղատու այգիներինը (1945 թվի տվյալներով) ավելի քան 12 անգամ։ Անասնակերի կուլտուրաների ցանքը այժմ մի քանի տասնյակ հազար հեկտարի է հասնում։

Ընթացիկ տարում Հայաստանի կոլխոզները կատարեցին տեխնիկական կուլտուրաների ցանքատարածության ընդարձակման ասպարեզում հնգամյա պլանով նշված առաջադրանքը։

Սովետական իշխանության տարիներին արմատավորվեցին մի շարք նոր կուլտուրա-



ներ, ինչպես, օրինակ, վարդագույն խորդենու, գանգրավուշի կուլտուրաներ, ծխախոտի ու կարտոֆիլի նոր տեսակներ, շաքարի ճակնդեղը, որի բազայի վրա 1947 թվից գործում է Համամլիի շաքարի գործարանը։

Հայաստանի գյուղատնտեսության աշխատավորները մեծ նվաճումների են հասել բերքատվության բարձրացման ասպարեզում։ 1947—1948 թվականները Սովետական Հայաստանի գյուղատնտեսության մեջ հանդիսացան մասսայական աշխատանքային սխրագործությունների տարիներ։ Բարձր բերքի համար մղվող պայքարը ստացել է համաժողովրդական բնույթ։ Լայնորեն կիրառելով ագրոտեխնիկական և գյուղատնտեսության առաջավորների փորձը, կոլխոզները ապահովեցին բարձր բերք։ Եթե նախասովետական Հայաստանի հացահատիկային կուլտուրաների միջին բերքը 4—4,5 ցենտներից չէր անցնում, ապա 1940 թվին այն հասավ 8,3 ցենտների, 1948 թվին մոտ 12 ցենտների։

Բազմաթիվ կոլխոզներ, հարյուրավոր բրիգադաներ և օղակներ կրկնակի, եռակի և նույնիսկ քառակի չափով գերազանցեցին բերքատվության առաջադրանքները։ Նոր Բայազետի, Սիսիանի, Ախտայի, Թալինի,

Կոտայքի, Աշտարակի և շատ այլ շրջանների առաջավոր օղակներ հեկտարից ստացան 30—40 ցենտներ հացահատիկի միջին բերք։ Բարձր բերքի և անասնապահության զարգացման համար ռեսպուբլիկայի 22 առաջավոր կոլխոզնիկների շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի պատվավոր կոչում, 28 մարդ պարգևատրվեցին Լենինի շքանշանով, 77 մարդ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով, 150 մարդ մեդալներով։ Բարձր բերքի համար մղվող պայքարը մեծ հաջողությունների է հասցրել գյուղատնտեսական այլ կուլտուրաների բնագավառում ևս։ Այսպես, օրինակ, եթե 1940 թ. յուրաքանչյուր հեկտարից ստացվել էր 79,7 ցենտներ կարտոֆիլ, ապա 1947 թվին այն հասավ 115,5 ցենտների։ Շաքարի ճակնդեղինը 1940 թվին մի հեկտարից 114 ցենտներից 1947 թվին հասավ 215 ցենտների։

Միայն սովետական իշխանությունը և կոլխոզային կարգերը լայն հնարավորություններ ստեղծեցին անասնապահության բուռն աճման համար։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը առ 1-ն հոկտեմբերի 1948 թ.՝ 1940 թվականի համեմատությամբ աճել է 18 տոկոսով, ոչխարներինը՝ 27 տոկոսով, ոչ-



խարներինը և այծերինը՝ 56 տոկոսով, մայր խոզերինը՝ 31 տոկոսով։ Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը տարեց-տարի բարձր ցուցանիշների է հասնում անասունների մթերատվության ասպարեզում։

Նախասովետական Հայաստանում մենք չունեինք էլեկտրիֆիկացված գյուղ, նույնիսկ մեր քաղաքներում — Երևանում և Լենինականում հազվադեպ երևույթ էր էլեկտրական լուսավորությունը։ Սովետական Հայաստանում զգալի աշխատանք է կատարվել գյուղերի էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Ներկայումս Հայաստանում 1.040 կոլխոզներից էլեկտրիֆիկացված է 325 կոլխոզ և 1948 թվականին արդեն էլեկտրականության ուժով աշխատում էին 68 կալսիչ, 56 ալրաղաց, 36 քամհար և սերմազտիչ, 38 սղոցարան, 16 կերամանրիչ ու սիլոսահատիչ։ Գյուղում էլեկտրական էներգիայի մուտքը հնարավորություն ստեղծեց մեր գյուղի ռադիոֆիկացման, կինոֆիկացման, կուլտուր-լուսավորական աշխատանքներ կատարելու և առհասարակ մեծ բեկում առաջացավ կոլխոզնիկների կենցաղի մեջ։

ՀԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը նշեց գյուղերի և գյուղատնտեսական աշխատանքների էլեկտրիֆիկացման պլանը, որի համա-

ձայն մինչև 1950 թվականի վերջը պետք է
ավարտվի գյուղերի և գյուղատնտեսության
սկզբնական պահանջն ապահովող գյուղա-
կան էլեկտրակայանների շինարարությունը։
1948—1950 թվականների ընթացքում
պետք է կառուցվեն և շահագործման հանձ-
նըվեն 76 հիդրոէլեկտրակայան՝ 17.450 կի-
լովատ ընդհանուր կարողությամբ։

Հայաստանի կոլխոզների տնտեսական
հաջողությունները և ամրապնդումը ապա-
հովեցին կոլխոզնիկների նյութական բարե-
կեցության սիստեմատիկ վերելքը։ Սրբու-
թյամբ. կատարելով և գերակատարելով պե-
տության հանդեպ իր պարտավորու-
թյունները կոլխոզային գյուղացիությունը
տարեց-տարի աճեցնում է աշխօրերի դի-
մաց տրվող մթերքների քանակը։

«Եթե 1940 թվականին յուրաքանչյուր
աշխօրի դիմաց տրվել է 1 կիլոգրամ 727
գրամ հացահատիկ, 1945 թվականին տրվեց
2 կիլոգրամ 63 գրամ, 1946 թվականին՝ 2
կիլոգրամ 175 գրամ, 1947 թվականին՝ 2
կիլոգրամ 130 գրամ հացահատիկ։

Կարտոֆիլ 1940 թվականին յուրաքան-
չյուր աշխօրի դիմաց տրվել էր 282 գրամ,
1945 թվականին 597 գրամ, 1946 թվակա-
նին՝ 502 գրամ, 1947 թվականին 770 գրամ։



Համապատասխանորեն կրկնապատկվել է
աշխօրերի դիմաց տրվող յուղի, պանրի,
բանջարեղենի և այլ մթերքների քանակը։

Աշխօրերի դիմաց տրվող դրամական
վարձատրությունը 1948 թվականին կազմեց
1940 թվականին տրվածի համեմատությամբ
135 տոկոս»։ (ՀԿ(բ)Պ XIV համագումա-
րում ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու
զեկուցումից)։

Բնորոշ է կոլխոզնիկների վաստակած
աշխօրերի քանակական աճումը։ Եթե յու-
րաքանչյուր կոլխոզնիկի վաստակած աշխօ-
րերի միջին քանակը 1940 թվականին կազ-
մում էր 141 աշխօր, ապա 1947 թվականին
այն հասավ 166 աշխօրի, որպիսի հանգա-
մանքը նույնպես աճեցնում է կոլխոզնիկի
եկամուտը։

Հայաստանի կոլխոզային գյուղացիու-
թյունը չի բավարարվում ձեռք բերված նվա-
ճումներով։ Կոլխոզային գյուղացիությունը,
Հայաստանի բոլշևիկների ղեկավարու-
թյամբ, պայքարի է դուրս եկել մինչև վերջ
կենսագործելու ընկեր Ստալինի ցուցում-
ները, որոնք իրենց վառ արտահայտությու-
նը գտան ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվար-
յան պլենումի որոշումների մեջ՝

«Այժմ խաղաղ շինարարության անցնե-

լուց հետո, մեր պարտիայի և պետության առաջ նորից իբրև ամենաանհետաձգելի խնդիր, ամբողջ հասակով ծառացավ գյուղատնտեսության այնպիսի վերելքի ապահովումը, որը թույլ տար ամենակարճ ժամկետում ստեղծել պարենի առատություն՝ մեր բնակչության համար, հումքի՝ թեթև արդյունաբերության համար և պետական անհրաժեշտ ու հումքային ռեզերվների կուտակում»։

***

Ժողովրդական տնտեսության բուռն վերելքը — հացահատիկի արտադրության խիստ ավելացումը, անասնապահության վիճակի բարելավումը և արդյունաբերական ապրանքների, այդ թվում լայն սպառման առարկաների անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեց ինչպես ողջ Սովետական Միության մեջ, այնպես էլ Սովետական Հայաստանում ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի համար, որն իր արտահայտությունը գտավ սովետական առևտրի հետագա ծավալման մեջ։ Հայկական ՍՍՌ հացի վաճառքը 1948 թվի երրորդ եռամսյակում, համեմատած 1947 թվի 3-րդ եռամսյակի հետ, ավելացավ 128,8 տոկոսով,



հրուշակեղենի վաճառքը՝ 63,5 տոկոսով, բամբակեղեն գործվածքինը՝ 4,9 անգամ, բրդեղեն գործվածքինը՝ 5,4 անգամ, կաշվե-կոշկեղենինը՝ 154,8 տոկոսով և ռետինե կոշկեղենինը չորս անգամ։ Գյուղատնտեսական մթերքների վաճառքը ռեսպուբլիկայի քաղաքների կոլխոզշուկաներում զգալիորեն ավելացավ և 15,6 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան մակարդակից։ Շարունակաբար իջնում են գյուղատնտեսական ապրանքների գները կոոպերատիվ առևտրում և կոլխոզային շուկայում, համեմատած այս տարվա 2-րդ եռամսյակի հետ — գները իջել են կոոպերատիվ առևտրում 16,5 տոկոսով, կոլխոզային շուկայի գները նույն ժամանակամիջոցում 35,5 տոկոսով։

***

Սովետական կարգերի հաստատումը Հայաստանում ոչ միայն փրկեց Հայաստանի այժմյան տերիտորիայում բնակվող հայերին, որոնց կործանման եզրին էին հասցրել հայ ժողովրդի երդվյալ թշնամիներ դաշնակները իրենց տիրապետության տարիներին, այլև լայն հնարավորություններ ստեղծեց իրականացնելու աշխարհով մեկ ցիր ու ցան եղած հայ ժողովրդի դարա-

վոր խիղճերը։ Սովետական իշխանության, Լենինի-Ստալինի ամենահզոր պարտիայի, անձամբ հայ ժողովրդի մեծ բարեկամ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի հայրական հոգատարությունը մեր բազմաչարչար ժողովրդի նկատմամբ, ապահովեցին ստարության մեջ ղեգերող հայ աշխատավորների վերադարձը Սովետական Հայաստան։

Արտասահմանյան հայերի հայրենադարձությունը թույլատրելու վերաբերյալ ՍՍՌ Միության կառավարության որոշումից հետո, Սովետական Հայաստան են վերադարձել մոտ 90.000 մարդ, որոնց մեջ աշխատունակները կազմում են մոտ 37.000 մարդ, որոնք ապահովված են աշխատանքով։ Բոլոր հայրենադարձների 42 տոկոսը տեղավորված են ռեսպուբլիկայի մայրաքաղաքում— Երևանում։

Բնակություն հաստատելով հայրենի սովետական երկրում հայրենադարձ հայերը, Սովետական կառավարության, բոլշևիկների պարտիայի և սովետական քաղաքացիների իսկական մարդասիրական՝ ստալինյան հոգատարության և ուշադրության արժանացան։

Հայրենադարձ հայերը բնակվում են նորակառույց բնակարաններում, որոնց կա-



ռուցման համար ծախսված է 275 միլիոն ռուբլի։ Երկարատև վարկի հաշվին մոտ 5000 հայրենադարձ ընտանիք կառուցել են և ապրում են սեփական նորակառույց բնակարաններում, պետական հիմնարկությունները ու ձեռնարկությունները կառուցել և հանձնել են հայրենադարձներին բնակվելու 3.700 սենյակ, կառուցման պրոցեսումն են մոտ 6500 բնակարան և 2500 սենյակ։

Էջմիածնի, Բերիայի և Վեդիի շրջաններում կառուցվում են 8 գեղեցիկ ավաններ, որից 7-ում արդեն բնակվում են հայրենադարձները։

Ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 377 հայրենադարձ երիտասարդներ, մասսայական և մասնագիտական դպրոցներում, գիշերային բանվորական և գյուղերում դպրոցներում, արհեստագործական ուսումնարաններում և ֆաբզավուչի դպրոցներում ներկա ուսումնական տարում սովորում են ավելի քան 20 հազար երիտասարդներ ու պատանիներ։

Հայրենադարձ հայերի զգալի մասը անգրագետ-կիսագրագետներ են։ Հայաստանի կառավարությունը լայն հնարավորություններ է ստեղծել այդ չարիքը վերացնելու հա-

մար։ Միայն 1947—1948 ուսումնական տարում 2757 կիսագրագետներ գրագետ են դարձել, իսկ 3275 անգրագետներ՝ կիսագրագետ։ Այժմ անգրագիտության վերացման դպրոցներում և խմբակներում սովորում են 2682 անգրագետ և 5279 կիսագրագետ։

Սովետական նոր քաղաքացիները ակտիվ մասնակցություն են ցուցաբերում մեր հասարակական-քաղաքական կյանքում։ Երեք հայրենադարձ ընտրված են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, 388 հայրենադարձ տղամարդ և կին վերջին ընտրությունների ժամանակ ընտրվեցին աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների դեպուտատներ։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակը 4 տարում կատարելու համար մեր երկրում ծավալված համաժողովրդական մրցության մեջ աչքի են ընկնում հազարավոր հայրենադարձներ, որոնցից շատ շատերը պարգևատրված են շքանշաններով և մեդալներով։ Հայրենադարձ կոլխոզնիկներ Սուլթան Ղազրամյանը և Աբրահամ Հովհաննիսյանը հացահատիկի բարձր բերք ստանալու համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության կողմից պարգևատրվեցին Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։



Հարյուրավոր հայրենադարձ առաջավոր բանվորներ արդեն կատարել են իրենց հնգամյա առաջադրանքը և աշխատում են 1951—1952 թվերի հաշվին։ Սովետական երկրում հայրենադարձ հայերի համար ստեղծված են բոլոր պայմանները ստեղծագործական-գիտական աշխատանք կատարելու համար։

«Արտասահմանյան գաղութներից հայերի մասսայական հայրենադարձությունը մեծ հարված հասցրեց հայ ժողովրդի ամենաոխերիմ թշնամիներին՝ դաշնակներին, որոնք տասնյակ տարիների ընթացքում արտասահմանյան աշխատավոր հայերից թաքցնում էին ճշմարտությունը Սովետական Հայաստանի մասին և, այդ երկրների ռեակցիոն ուժերի հետ միասին, հակասովետական սանձարձակ զրպարտություններ ու պրովոկացիաներ էին տարածում։

Չկարողանալով խանգարել հայերի հայրենադարձությանը, դաշնակները Սովետական Հայաստան վերադարձող հայ հայրենասերների դեմ անցան բանդիտական հարձակումների ու տեռորի։

Այդ դավաճանները, կորցնելով ազդեցությունն արտասահմանյան հայերի մեջ, բացե ի բաց վաճառվել են անգլո-ամերիկյան

ռեակցիային, և իրենց անկումով գտնվում են Թյուրքիայի հետ միևնույն լագերում, ընդդեմ Սովետական Հայաստանի։

Նրանք դիմում էին նողկալի միջոցների, ներգաղթողների հետ միասին Սովետական Հայաստան ուղարկելով պրովոկատորների, որոնց միջոցով փորձում էին վարկաբեկել հայրենիք վերադարձող հայրենասերներին։

Սակայն այդ բոլոր փորձերն ապարդյուն անցան. Ներգաղթողներն իրենք և արտասահմանյան հայկական պրոգրեսիվ գաղութները մերկացրին ու արժանի հակահարված տվին դաշնակների ոտնձգություններին»։

(ՀԿ(բ)Պ XIV համագումարում ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցումից)։

***

Սովետական իշխանության տարիներին հայ ժողովուրդը ստեղծեց իր նոր, սոցիալիստական, իսկական ժողովրդական կուլտուրան, արվեստը, գրականությունը ու գիտությունը։

Հայրենական Մեծ պատերազմի օրերին, 1943 թվականին ստեղծվեց Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիան, որը ներկայումս միավորում է 30 գիտահետազոտական ինստիտուտ և հաստատություն։ Կարճ ժա-



մանակամիջոցում աճել են գիտական կադրերը։ Այժմ ունենք ՍՍՌ Միության Գիտությունների Ակադեմիայի 4 իսկական անդամներ, Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի 19 իսկական անդամներ, Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի 17 անդամ-թղթակիցներ, գիտության դոկտորներ ու պրոֆեսորներ՝ 119, գիտության թեկնածուներ ու դոցենտներ՝ 384։

Անցած տարիների ընթացքում Գիտությունների Ակադեմիան բեղմնավոր մեծ աշխատանք է կատարել գիտական պրոբլեմների մշակման գործում։ Բավական է հիշատակել ակադեմիկոսներ— եղբայրներ Ալիխանյանների կատարած աշխատանքը կոսմիկական ճառագայթների ուսումնասիրման բնագավառում, որոնք իրենց աշխատանքների համար արժանացան Ստալինյան մրցանակի։ Աստրո-ֆիզիկայի բնագավառում աչքի ընկնող աշխատանքի համար ստալինյան մրցանակի է արժանացել ակադեմիկոս Վ. Համբարձումյանը, Ստալինյան մրցանակի են արժանացել նաև ակադեմիկոսներ Մալխասյանը և Պիոտրովսկին։

Գիտահետազոտական ինստիտուտները մեծ աշխատանք են կատարում սոցիալիստական շինարարության հետ կապված գի-

տական պրոբլեմների մշակման, հայ ժողովրդի կուլտուրայի ու պատմության ուսումնասիրման բնագավառներում։

1947 թվականին Երևանում հիմնադրվեց նոր գիտահետազոտական ինստիտուտ՝ Մարքսի-Էնգելսի-Լենինի ինստիտուտի Հայկական ֆիլիալը։

«Ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հաստատություններն ու գիտնականները ձեռնամուխ են եղել ընկեր Ստալինի կողմից սովետական գիտության առջև դրված խնդրի կատարմանը՝ հասնել և գգալիորեն գերազանցել արտասահմանյան երկրներում գիտության ձեռք բերած նվաճումներից»։ (ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարում ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցումից)։

Հոյակապ են մեր նվաճումները ժողովրդական լուսավորության բնագավառում։ Սովետական իշխանության տարիների ընթացքում Հայաստանը դարձավ համատարած գրագիտության երկիր։

Եթե 1918—1919 ուսումնական տարում կար 18.000 աշակերտ, ապա 1948—1949 ուսումնական տարում Հայաստանի 1.193 միջնակարգ դպրոցներում սովորում են 302.000 աշակերտ։ Ներկայումս ունենք



մասսայական դպրոցների ու բուհերի 15.000 ուսուցիչ և դասախոս։

Քաղաքներում լիովին իրագործված է յոթնամյա պարտադիր ուսուցումը և բոլոր պայմանները նախապատրաստված են գյուղում յոթնամյա պարտադիր ուսուցման անցնելու համար։

Ռեսպուբլիկայում ներկայումս գործում է 53 տեխնիկում, որոնց ուսանողության թիվը կազմում է 9.282 մարդ։

Սովետական իշխանության տարիներին մեր բուհերը հազարավոր մասնագետներ են տվել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար։ Բավական է նշել, որ միայն 1940—48 թ. թ. ընթացքում ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունները երկրին են տվել 6.610 մասնագետ։ Նախասովետական Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, այժմ գործում են 14 ստացիոնար և 3 հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություն։

Սովետական Հայաստանը պատած է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։ Գյուղերում, ավաններում և քաղաքներում գործում են հազարավոր ակումբներ, գրադարաններ, կուլտուրայի

տներ, թատրոններ, կինոներ և այլն։ 194[illegible] թվականին ռեսպուբլիկայում կա 957 գյուղական ակումբ, 2.110 գրադարան և գրադարան-ընթերցարան, 216 կինո-սարքավորում, 20 շրջանային թատրոն, ռեսպուբլիկական Շրջիկ թատրոն, Շրջիկ ցուցահանդես, Երևանում ժողովրդական ստեղծագործության տուն։

Ներկայումս Հայաստանում հրատարակվում է 8 ռեսպուբլիկական, 2 քաղաքային և 38 շրջանային թերթ, ինչպես նաև 6 բազմատիրաժ թերթ և 9 ժուռնալ։ Քաղաքները և գյուղերի զգալի մասը ռադիոֆիկացված են։

Անցած 28 տարիները հանդիսացան հայ ժողովրդի սոցիալիստական արվեստի ու գրականության չտեսնված ծաղկման տարիներ։ Ստեղծվել է սովետահայ հարուստ գրականություն։ Պատերազմի տարիներին նոր երկեր ստեղծեցին Ավետիք Իսահակյանը, որն արժանացավ Ստալինյան մրցանակի, Նաիրի Զարյանը, Հրաչյա Քոչարը, Գուրգեն Բորյանը և ուրիշներ։

Հսկայական չափով աճել է ժողովրդական առողջապահական հիմնարկների ցանցը։ Նախառևոլյուցիոն Հայաստանը այդ ուղղությամբ ներկայացնում էր իրենից ամենից խղճուկ և անհրապույր պատկեր։



Ներկայումս Սովետական Հայաստանում կա 120 հիվանդանոց՝ նախառևոլյուցիոն 6 առողջապահական հիմնարկների փոխարեն, 5181 հիվանդանոցային մահճակալներ՝ 212-ի դիմաց։ Գործում են 46 ռենտգենոլոգիական կաբինետներ, 43 ֆիզիո-թերապևտիկ կաբինետ և 48 լաբորատորիա։ Ռեսպուբլիկայում կա 300 ամբուլատորիա։ Սովետական կառավարությունը մեծ հոգատարություն է ցույց տալիս մայրերին և երեխաներին, ապահովում պետական նպաստներ բազմազավակ մայրերին, ստեղծվել է մանկական կոնսուլտացիաների, հիվանդանոցների, մանկամսուրների, մանկահրապարակների խիտ ցանց։

Սովետական իշխանության տարիների ընթացքում ամբողջապես կերպարանափոխվել է ռեսպուբլիկայի քաղաքների ու գյուղերի դեմքը։ Նախասովետական Երևանը՝ նեղ, կեղտոտ փողոցներով, կավաշեն տներով, ուներ շատ խղճուկ կոմունալ տնտեսություն։ Անցած 28 տարիների ընթացքում Երևանը անճանաչելիորեն փոխվել է, դարձել ինդուստրիալ, գեղեցիկ ու կուլտուրական քաղաք։ Նա դարձել է Սովետական Հայաստանի սովետահայ կուլտուրայի, գիտության ու արվեստի կենտրոն։ Տարեց-տարի

ընդարձակվում է բնակարանային ֆոնդը, ճարտարապետորեն ձևավորվում են նոր բացված հրապարակներն ու փողոցները, ստեղծվել են բազմաթիվ պուրակներ ու այգիներ: Մայրաքաղաքը ծածկվում է կանաչով, հեղեղված է էլեկտրական պայծառ լույսով:

Բարձրացել են սոցիալիստական նոր քաղաքներ, հիմնովին բարեկարգվել են մեր շրջանային կենտրոններն ու գյուղերը:

«Երբեք չեն հաղթի այն ժողովրդին,— ասում էր Վ. Ի. Լենինը,—որի մեջ բանվորների ու գյուղացիների մեծ մասը իմացել, զգացել ու տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, Սովետական իշխանությունը— աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը նրանց և նրանց երեխաներին հնարավորություն կապահովի օգտվել կուլտուրայի բոլոր բարիքներից՝ մարդկային աշխատանքի բոլոր արդյունքներից»:

Ոգևորված Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի XIV համագումարի որոշումներով, ռեսպուբլիկայի բանվորները, կոլխոզային գյուղացիությունը և ինտելիգենցիան հաջողությամբ կիրականացնեն հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը չորս տարում կատարելու մարտական խնդիրը:



Հայաստանի աշխատավորությունը Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, Սովետական Միության ժողովուրդների հետ միասին հաստատուն քայլերով ընթանում է դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը մեր երկրում:

